# ՄԱՐԶԱԿԱՆ

## ՀԱՅ ՈՒՍԱՆՈՂՆԵՐՈՒ ՄԱՐԶԱԿԱՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Մարտ 24ին տեղի ունեցան ԱՄ-ՍԱԼԱՄ բարձրագոյն Վարժարանի աթլեթիք մրցումները։

Ընդհանուր արդիւնքներուն մէջ մասնաւորաբար աչքի կ՚արկաւ հայ ուսանողներու ձեռք բերած պատուաւոր դասաւորումները, զոր կը պարտին մեր հայկական վարժարաններու եւ մարզարաններու ժրաջան աշխատանքներուն։

Ստորեւ կու տանք հայ ուսանողներու շահած մրցանակները։

**ՄԵԾԵՐՈՒ ԲԱԺԻՆ,**

Հրայր Պապիկեան
—Օրուան Ախոյանութեան բաժակ
—Բարձրութիւն ցատքելու առաջնութեան բաժակ,
—Գունդի արձակման Ա. Բաժակ
— 100 մեթր վազք, Բ. մէտայլ
—1500 մեթր վազք, Գ. մէտայլ
—Մէկ քայլ ոստում՝ Գ. մէտայլ

Վարուժան Խաչատուրեան
— 800 մեթր վազք· Ա. բաժակ
— 1500 մեթր վազք· Ա. բաժակ

Սարգիս Պալեան
— 200 մէթր վազք, Ա. բաժակ

Յոլակ Պապիկեան
— 200 մեթր վազք, Գ. մէտայլ
—Բարձրութիւն ցատքելԳ. մէտայլ

Դրօշարշաւի երկրորդ հանդիսացող խումբը կը բաղկանար չորս հայ ուսանողներէ.- Հրայր Պապիկեան, Յոլակ Պապիկեան, Արսէն Էմիրզեան եւ Վարուժան Խաչատուրեան։

**ԿՐՏՍԵՐՆԵՐՈՒ ԲԱԺԻՆ** (մինչեւ 14 տարեկան)

Կրտսերներու բաժնին մէջ հայ ուսանողները ձեռք բերին հետեւեալ արդիւնքները։-

Վահան Իշխանեան
— 100 մեթր վազք, Ա. բաժակ
— Բարձր. ցատկելու, Ա. բաժակ
— մէկ քայլ ոստումի Բ. մէտայլ
— 200 մեթր վազք, Գ. մէնայլ
— 400 մեթր վազք, Գ. մէտայլ

Մարտիկ Պալաեան
— 100 մեթր վազք, Գ. մէտայլ։

Դրօշարշաւի առաջին հանդիսացող խումբը կը բաղկանար, Վահան Իշխանեանէ, Վազարշ Պուտագեանէ, Պերճ Թումայեանցէ և Մարտիկ Պալաեանէ։



Օրուան Ախոյեանը
Հրայր Պապիկեան

Գալով Պասքէթ Պոլի մրցումներուն, Վարժարանի ախոյեան խումբը ամբողջութեամբ կը բաղկանար հայ ուսանողներէ, որոնք են.- Միհրան Գասապեան, Արսէն Էմիրզեան, Պերճ Թումայեանց, Վահան Իշխանեան, Վարուժան Խաչատուրեան, Մարտիկ Պ լաեան, Հրայր Պապիկեան, Յոլակ Պապիկեան, Վազարշ Պուտագեան, Արթօ Վարժապետեան և Օհան Վարժապետեան։

Աղջկանց բաժանմունքին մէջ հայ օրիորդներէն յիշատակութեան արժանի են Օրք. Անի Արիսեան, Միրէյ, Սաթենիկ Պալաեան, Սիրվարդ Պալեան և Էվլին Պզտիկեան, որոնք ձեռք բերին պատուաւոր արդիւնքներ, մասնաւորաբար հաւաքական խաղերու (դրօշարշաւ, նէթ-պոլ, հէնտ-պոլ), արգելարշաւի եւ բարձրութեան ոստումի մէջ։

Կը շնորհաւորենք վերոյիշեալ մեր հայ ուսանողները, որոնք հարիւրաւոր օտար ամենազգի ուսանողներուն մէջ կարողացան բարձր պահել հայոց ազգային վարկը։

Կը մաղթենք, որ մօտ ատենէն մեր հայկական վարժարաններն ալ՝ ամէն տարի կազմակերպեն այսպիսի մարզական մրցումներ։

## ՏԻԳՐԱՆ ՆԱԶԻՐԵԱՆ
### ԴԱՐՁԵԱԼ ՅԱՂԹԱԿԱՆ

22 Մարտ 1964, Տէ. Աչ. Փէ.ի պասքէթի դաշտին վրայ տեղի ունեցած է ըմբշամ րտի մեծ մրցում մը՝ Գերմանիոյ ախոյեան Հանց Միւլէրի և Լիբանանի ախոյեան Տիգրան Նազիրեանի միջև։

42 վայրկեանի վճռական մենամարտէ մը ետք, Լիբանանի ախոյեան Տիգրան Նազիրեան յաջողած է գգետնել իր գերմանացի հակառակորդը և նոր յաղթանակ մը աւելցնել իր վերջին յաջողութիւններուն վրայ, ինքզինք «անպարտելի» տիտղոսին արժանի ներկայացնելով։ Ինչպէս գիտենք, հայ ըմբիշը վերջերս շրջապտոյտի մեկնած էր Եւրոպա, յաղթական ելոյթներ ունենալով տարբեր մայրաքաղաքներու մէջ։

## ԿՈՉ ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ

Ազնիւ հայրենակիցներ,

Մեր պատմութեան անկիւնադարձային պահերուն, դիմադրելու համար անապատ յորձանքներու, մեր ժողովուրդը գտած է միջոցը ինքզինքը եւ իր դիմագծութիւնը պահպանելու, շնորհիւ հայրենիքի գաղափարին, շնորհիւ Հայց. Եկեղեցւոյ եւ շնորհիւ իր դարաւոր մշակոյթին։ Գաղթականութեան ամենէն մռայլ օրերուն, հայ շինարար զանգուածները կըրցած են ուրոյն կեանք ստեղծել եւ ոգեկան ապրումներ ապահովել իրենց համար։

Մինչեւ բոլոր հայերուն վերադարձը ի Մայր Հայրենիք, ինչպէս անցեալին, ներկայիս եւս եւ աւելի չափով, հայեր կանչուած պիտի մնան իրենց ազգային ինքնուրոյնութիւնը պահպանող վերոյիշեալ նուիրականութիւններուն—Հայրենիքի գաղափարին եւ իրականութեան, եկեղեցիին, դպրոցին, գիրին եւ գրականութեան։

Այդ ինքնուրոյնութիւնը պահպանող ազդակ մըն է նաեւ **հայ ակումբը**, ուր ազգային հաւաքական կեանք մը ապրելով մէկտեղ, հայեր կը ջանան զարգացնել իրենց մշակոյթն ու քաղաքակրթութիւնը։ Անուրանալի է հայ ակումբին կատարած դերը՝ ազգային կեանքի տեսակէտէն։

Այս համոզումէն առաջնորդուած, ներկայիս կոչ կ՚ընենք Գահիրէի հայութեան, որ դէպի Մայր Հայրենիք եւ այլուր նամբորդած հայերու պակասը զգալի չդարձնելու համար, բոլորուի հայ ակումբին շուրջ՝ եկեղեցիէն եւ դպրոցէն ետք, փարելով նաեւ հայ գիրքին ու թերթին, ի պահպանութիւն գաղութիս կազմակերպ բարգաւաճումին։

Հայկական Ընթերցասրահը, բազմամեայ ժամադրավայրը հայ ազգասէր եւ մշակութասէր հասարակութեան, իր գործունէութեամբ կը ձգտի կատարել իր բաժին առաքելութիւնը՝ լաւագոյնս։ Արդ, կը հրաւիրենք բոլոր հայերը, անխտիր, ըլլան անդամագրուին անոր, կամ դառնան անոր ձեռնարկներուն իրենց ներկայութեամբը քաջալեր հանդիսացող քաղաքացիներ։

Հայկական Ընթերցասրահի ազգային եւ ընտանեկան մթնոլորտին մէջ՝ տարեցները պիտի գտնեն ազգային սփոփանք եւ վայելք, իսկ երիտասարդները, իրենց ձիրքերը զարգացնելէ զատ, պիտի բազմապատկեն իրենց ազգային դիմադրականութիւնը։

Մեր երկրորդ հայրենիք Ա.Մ.Հ.ի օրինապահ եւ օգտակար քաղաքացին մնալէ յետոյ, մեր ազգային դիմագծութիւնը պահպանելու միակ լաւագոյն միջոցն է ասիկա։

Ուրեմն, անդամագրուեցէ՛ք Հայկական Ընթերցասրահին եւ գործեցէ՛ք անոր մշակութային աշխատանքներու դաշտին մէջ։

ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻ
ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ԽՈՐՀՈՒՐԴ

## ԾԱՆՐԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

ՍՍՌՄի ծանրաբարձութեան մրցանիշները։ երիտասարդ մարզիկներուն մըրցումները նոր աւարտեցան Տոնեցքի մէջ։ Այստեղ հաստատուեցան Ս. Միութեան վեց մրցանիշներ, որոնց երկուքը կը գերազանցեն երիտասարդներու համաշխարհային մրցանիշները։

Այսպէս, 138,5 քիլօ դանդաղօրէն բարձրացնելով և երեք չարժումով 410 քիլօ վերցնելով, 19 տարեկան մարզիկ Վ. Կիզոկեան համաշխարհային նոր մրցանիշ մը հաստատեց՝ միջին դասու մէջ։

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ

Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱԵԱՆ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ القاهرة (ج.ع.م) تليفون ٥٧٠١٣
صاحبة الامتياز: السيدة عايده سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) - Tél. 57013
Adresse Télégraphique. TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948ին

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 24 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 23 ԱՊՐԻԼ 1964 | ՀԱՏԸ ԶԵՐԹԷ 2,5 Եգ. Դհկ. կամ 25 Լիբ. Դհկ. | الخميس ٢٣ أبريـــل ١٩٦٤ | العدد رقم ٢٤


# ՅԱՐԳԱ՛ՆՔ ՄԵՐ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆ

*Ա՛յս յորջորջումով կը ճանչնայ աշխարհ՝ այն մեծ ոճիրը, մեծագոյնը մարդկային պատմութեան մէջ, զոր Թուրքիոյ կառավարութիւնը (Իթթիհատական «Ժէօն-Թիւրք»եր) գործադրեցին Օսմանեան պետութեան հողի մէկ մասին նախկին գլխաւոր տէրը և երկրին ամէնէն պիտանի տարրը հանդիսացող հայ ժողովուրդին վրայ՝ 1915 Ապրիլ 24էն սկսեալ:*

*Իր վերջին գմելի՛ն իսկ, իբրև օգտագործելի զէնք, պատերազմի նոր մտած օսմանեան հայրենիքին նուիրած հայութիւնը, յանկարծ տեսաւ որ իր լաւագոյն եկեղեցականները, մեծագոյն գրագէտներն ու արուեստագէտները, ընտրելագոյն դաստիարակները, իր բոլոր մեծամեծները, ճարտարարուեստագէտներն ու առեւտրականները՝ շղթայակապ նետուած են բանտ, կամ մահացած ծեծի տակ, կամ աքսորուած հեռաւոր երկիր՝ մեռնելու, կամ կախաղանի վրայ և կամ անապատին մէջ՝ զոհ անարգ գնդակի մը կամ քարի կտորի մը: Զե՛նք ուզեր պատկերին սրտաճմլիկութիւնը խորացնել՝ այլ միայն կը թուենք ծծկեր մանուկներու հրկիզումը պարկերու մէջ, գանգուածներու հրդեհումը գոմերով մէկտեղ. ցիցերու վրայ նստեցուած քահանաները, գրաւի առարկայ դարձած յղի կիները, ստինքի պտուկներով կազմուած համրիչները և գանկի բլուրները...:*

*Ինչ չա՛հ լալէն, յուզուելէն և տխրելէն: Ինչ չա՛հ նոյնիսկ զօրաւոր ատելութեան ու վրէժի զգացումներէն:*

*Մեր ժողովուրդին վրայ գործուած այս մեծագոյն ոճրափորձին, զայն բնաջնջելու այս անարգ ձեռնարկին կը նայինք այսօր առանց ոչինչ մոռնալու և առանց ոչինչ մոռնալ ուզելու. բայց կը նայինք արդիական մարդու պաղարիւնութեամբ և իրատեսութեամբ:*

*Ճի՛շդ է: Մենք վիպական էինք, ռոմանթիք, անփորձ և ոչ շատ արթուն: Իսկ Թուրքը վարպետ էր ու վարպետօրէն կազմակերպեց, միանգամընդմիշտ ազատելու համար իր օձիքը մեզմէ:*

*Տէ՛ր էինք հողին, ընդունակ և յառաջադէմ էինք, հարուստ էինք, ու կը ձգտէինք, կը պահանջէինք ազատութիւն և մենք մեզ վարելու իրաւունք: Աններելի յանցանքներ էին ասոնք յաչս Թուրքին, որ ի Ծնէ ծոյլ է, անընդունակ, ձրիակեր և անարդար, անխիղճ, ի Ծնէ...: Ու տուաւ մեծագոյն հարուածը՝ յարմարագոյն առիթով, պատերազմ...:*

*Մեր ժողովուրդը կորսնցուց իր օճախը և իր թիւին կէսը, զինք պաշտպանելու ստորագրութիւն դնող Արեւմուտքին աչքին առջև:*

*Ահաւո՛ր ճակատագիր:*

*Բայց մեր ժողովուրդը չմեռա՛ւ, չվերջացա՛ւ...:*

*Շուտով կանգնեցաւ ոտքի, և այսօր, իր հին թիւը կրկնապատկած թերեւս, կրնայ հաշուակցումի նստիլ...:*

*Եւ ինչո՞ւ չմեռաւ մեր ժողովուրդը.*

*Որովհետև, այն մահը՝ զոր Թուրքը կը պարտադրէր իրեն, բնական, վերջակէտ դնող մահ մը չէր: Հայը կ'իմանա՛ր, կ'ըմբռնէ՛ր՝ թէ ինչո՞ւ կը մեռցնէին զինք, ինչո՞ւ կը մեռնէր այդ ձեւով...: Գիտէ՛ր, կը գիտակցէր, որ իր մէջ սպաննուիլ ուզուած ՀԱՅՈՒ ՈԳԻՆ էր: Եւ գիտէր միաժամանակ, որ այդ ոգին անմեռ էր, չմեռցուելիք բան մը:*

*Ուրեմն Ապրիլեան զոհ հայութեան մահը՝ իմացեա՛լ մահ մըն էր: Ու մենք սորված ենք, անմահ Եղիշէի օրերէն ի վեր, որ «մահ իմացեալ, անմահութի՛ւն է...»:*

*Տուի՛նք մեր գլուխները, բայց ո՛չ անոնց պարունակութիւնը: Առի՛ն մեր մարմինները, բայց ոչ անոնց բովանդակած ան-*

(Շար. տեսնել 2րդ էջ)



ԱՊՐԻԼԵԱՆ ԽԱՒԱՐԷՆ՝ ԱՊՐԻԼԵԱՆ ԼՈՅՍԻՆ

Գծագրութիւն ՍԱՄՍՈՆԵԱՆԻ

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ու վեր կացայ ես, որ մեր հայրենի օրհնքովը հին՝
Վերջին հանգիստը կարդամ իմ ազգի անբախտ զոհերին,
Որ շէն ու քաղաք, որ սար ու հովիտ, ծովից մինչեւ ծով
Մարած են, մեռած, փռուած ու ցրուած հազար հազարով...

Ու կրակ առայ Հայոց հրդեհի կարմիր բոցերից,
Էն խաղաղ ու պաղ երկընքի ծոցում վառեցի նորից
Մասիսն ու Արան, Սիփանն ու Սըրմանց, Նեմրութ, Թանդուրէք,
Հայոց աշխարհի մեծ կերոնները վառեցի մէկ մէկ,
Սուրբ Արագածի կանթեղն էլ, ինչպէս հեռաւոր արեւ,
Անհաս անընւազ, միշտ վառ ու պայծառ իմ գլխի վերեւ...

Կանգնեցի խոժոռ, մենակ ու հաստատ, Մասիսի նման,
Կանչեցի թըշուառ են հոգիներին՝ ցրուած յաւիտեան
Մինչեւ Միջագետք, մինչեւ Ասորիք, մինչեւ Ծովն Հայոց,
Մինչեւ Հելլեսպոնտ, մինչեւ Պոնտոսի ափերն ալեկոծ:
—Հանգէ՛ք, իմ որբե՛ր, ի զո՛ւր են յուզմունք, ի զո՛ւր եւ անշահ,
Մարդակեր գազան՝ մարդը՝ դեռ երկար էսպէս կը մնայ...»:

Աջիցըս Եփրատ, ձախիցըս Տիգրիս՝ անհեղ ձեներով,
Սաղմոս կարդալով՝ անցան, գընացին խոր խոր ձորերով;
Ամպերն էլ եկան Ջիրաւի ձորից, հըսկայ բուրվառից,
Ճանապա՛րհ ընկան Ծաղկանց սարերից, Հայկական պարից,
Բոյլ-բոյլ, բուրաւէտ, շարժուեցին դէպի կողմերը հեռու,
Գոհար ցօղելու, ծաղկունք բուրելու, բուրմունք խընկելու
Մինչեւ Միջագետք, մինչեւ Ասորիք, մինչեւ Ծովն Հայոց,
Մինչեւ Հելլեսպոնտ, մինչեւ Պոնտոսի ափերն ալեկոծ:
—Հանգէ՛ք, իմ որբե՛ր, ի զո՛ւր են յուզմունք, ի զո՛ւր եւ անշահ,
Մարդակեր գազան՝ մարդը՝ դեռ երկար էսպէս կը մնայ...»:

ՅՈՎՀ. ԹՈՒՄԱՆԵԱՆ

### ԿՏԱԿ

*Մեր մեռելները կ'ըսեն հողին տակէն, երեսէն, իրենց թաղուած կիսաթաղ, խաղաղատենչ, տենչախռով ոսկորներուն խշխշով.*

*«— Պէտք է որ Յոյսը մատաղ Ձեր սրտին մէջ ալ, տղա՛ք, Ձեզի համար ու մեզի, Ամէն, ամէ՛ն երկնի տակ, Յաւերժաբա՛ր բողբոջի...:»*

Վ. ԹԷՔԷԵԱՆ

**Ո՛Վ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴ, ՔՈ ՄԻԱԿ ՓՐԿՈՒԹԻՒՆԸ ՔՈ ՀԱՒԱՔԱԿԱՆ ՈՒԺԻ ՄԷՋ Է.**

Ե. ՉԱՐԵՆՑ

«Ջահակիր»ի այս թիւը՝ արաբական «Ատհա»յի (Գուրպան Պայրամ) տօնի արձակուրդին զուգադիպած ըլլալով, ստիպուած եղանք տալ չորս էջ միայն:

Մեր յաջորդ թիւը լոյս պիտի տեսնէ ութը էջով, Ապրիլ 30ին:

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة "ج.ع.م." - ت ٩١٥٠١٣
صاحبة الامتياز: السيدة عايدة سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) - Tél.915013
Adresse Télégraphique: TCHAHAKIR, Cairo
Rédacteur en chef; SARKIS BALAYAN

Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ
Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱԵԱՆ

Հիմնուած 1948ին

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 27 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 14 ՄԱՅԻՍ 1964 — ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 2,5 Եգ. Դհկ. կամ 25 Լիբ. Դհկ. — العدد رقم ٢٧ - الخميس ١٤ مايــو ١٩٦٤


## ДОБРО ПОЖАЛОВАТЬ. ДОРОГОИ ДРУГ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՊԱՏՄԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ

**( ՆԻՔԻԹԱ Ս. ԽՐՈՒՇՉՈՎ ՄԵՐ ՄԷՋ )**

Արաբական Միացեալ Հանրապետութեան մեծ բարեկամ՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետութիւններու Միութեան վարչապետ Նիքիթա Սերգէեւիչ Խրուշչովի այցելութիւնն է ասիկա, զոր կոչեցինք պատմական։

Եգիպտոսի հողերուն, իր աշխատաւոր և հերոս ժողովուրդին, իր ընկերվարական և դեմոկրատական կառավարութեան և իր կորովի ու անմահ Նախագահ Կամալ Աբտէլ Նասէրի մեծ հիւրն է Խրուշչով՝ Մայիս 9էն ի վեր։

Բարի գալուստ Մեծ Բարեկամին և Թանկագին Հիւրին, ողջունած նաեւ մեր համեստ էջերէն, յանուն Ա.Մ.Հ.ի հայ համայնքին։

Այո՛, մենք եւս կ'ողջունենք Մեծ Միութեան Մեծ Առաջնորդը, իբրեւ եգիպտացի, իբրև Եգիպտոսի հայ համայնքը և իբրեւ մանաւանդ մասով, որբագրել փորձելով մեր ազգային իշխանութեան և իր հոգեւոր պետին դանդաղկոտութիւնը . . . ։

Բարի գալուստ Նիքիթա Սերգէեւիչ Խրուշչովին, Խաղաղութեան և ժողովուրդներու Համագործակցութեան համաշխարհային ախոյեան Սովետական Մեծ Միութեան անձնուէր ու սիրուած Պետին։

Բարի գալուստ, յանուն այս օրհնեալ երկրի հայ երախտագէտ տարրին, որ ըլլալով մէկտեղ եգիպտացի, հոգեկան ու բարոյական մէկ հեռաւոր մասնիկն է նո՛յն Սովետական Մեծ Միութեան աքանչելի ընտանիքի անդամ Սովետական Հայաստանի անպարտելի ժողովուրդին։

Այս անվերապահ սիրոյ և բարեկամութեան, այս խանդավառ ուրախութեան և հրճուանքի արտայայտութենէն ետք, մե՛նք ալ հարցնենք, այս երկրի աննկուն առաջնորդ Կամալ Աբտէլ Նասէրին հետ, մե՛նք ալ հարցնենք մեզի՝ թէ ինչո՞ւ այսքան կարեւոր ու այսքան բարեբաստիկ կը նկատուի այս այցելութիւնը։

Ինչպէս լուեցաւ արաբ պետերու արտասանած ճառերուն, լրագրի մէջ երեւցած բազմաթիւ յօդուածներուն, ձայնասփիւռի և հեռատեսիլի ելոյթներուն միջոցաւ, այս այցելութիւնը հաստատումն է կարգ մը վերջնական բնոյթ ու կերպարանք առած իրողութիւններու, որո՛նք աշխարհի դիմագիծը փոխեցին վերջին տասնամեակի ընթացքին։

Որո՞նք են այդ իրողութիւնները.—

1) Հաստատուեցաւ, որ խաղաղութեան, ազգային իրաւունքներու պաշտպանութեան և ժողովուրդներու ազատութեան ու անկախութեան պայքարին համար՝ ասպարէզը ապահովուած է աշխարհին մէջ Սովետական Միութեան ներկայութեամբը։ Ապացոյց՝ Եգիպտական Յեղափոխութեան ճանաչումը, Գաղութատիրութեան և Կայսերապաշտութեան դէմ ԱՄՀի և Ափրիկէի պայքարին գտած նեցուկը, Երրեակ Յարձակումին (Սուէզի վրայ) զսպումը և Աւատա-դրամատիրութեան տապալումը ԱՄՀի և Ափրոասիական բազմաթիւ երկիրներու մէջ։

2) Հաստատուեցաւ, որ ժողովուրդներու եղբայրութիւնը և համագործակցութիւնը, փոխանակի համար արտասանուած ճառեր չեն, այլ իրական ու գործնական հիմերով ու ընթացքով պարզուած երեւոյթներ, յանուն և յօգուտ մարդկութեան։ Ապացոյց՝ ԱՄՀի բանակին վերակազմակերպումը և պատերազմական-ինքնապաշտպանողական մթերքի ճոխացման գործին ընծայուած օժանդակութիւնը նիւթապէս և գործնապէս, դրամով և ապրանքով։ Ապացոյց նաեւ՝ արեւմտեան դրամատիրութենէն մերժուած ծրագիրին՝ Նեղոսի Հովիտը ոռոգելու ծառայելիք Բարձր Ջրամբարի շինութեան բերուած անգնահատելի օգնութիւնը, նիւթապէս և թեքնիք կերպով, դրամով, գործիքներով, նախանիւթերով և մասնագէտներով։

( Շար. տես էջ 2 )

## ԽՐՈՒՇՉՈՎ Ա.Մ.Հ.Ի ՀԻՒՐ



«Սովետական ժողովուրդը, օգնելով մեկնեղ, չի միջամտեր կայսերապաշտութեան լուծէն նոր ազատած երկիրներու ներքին գործերուն»



«Յեղափոխականներու բարեկամութիւնը ամենէն ամուրն է բարեկամութիւններուն մէջ։ Իրաւ յեղափոխութեանց միջեւ բարեկամութիւնը պատմական իրողութիւն մըն է, անուրանալի՝ ինչ ալ ըլլան ուղղութիւնները»

Արաբական Միացեալ Հանրապետութեան բարեկամ Սովետական Միութեան սիրուած վարչապետ Նիքիթա Սերգէեւիչ Խրուշչով, ինչպէս գրած էինք, հիւր եկաւ մեր երկիրը, Աղեքսանդրիա հասնելով Մայիս 9, կ. ա. ժամը 10ին՝ «Արմենիա» շոգենաւով։ Ան ընդունուեցաւ եգիպտական ծովուժին կողմէ մեծ պատիւներով։ Մարաջախտ Ամէր մինչեւ նաւ գացած էր դիմաւորելու մեծ հիւրն ու իր ընկերակիցները (տիկինը, դուստրը, փեսան՝ Աճուպէյ, Կրոմիքօ, Ալիխանով, Կրեչքօ, Սաթուիքով, եւն.)։



Եղբայրական Ողջագուրումը

Իր փափաքին վրայ՝ Խրուշչով ճառ մը խօսեցաւ հազիւ ցամաք ելած, բերելով սովետական ժողովուրդին ու պետութեան ողջոյնները արաբ ժողովուրդին և կառավարութեան։ Առաջին անգամն էր որ ուգար Ափրիկէ և Ա.Մ.Հ.։ Անկէ առաջ խօսք առած էր Նախագահ Նասէր՝ բարի գալուստ մաղթելու, հիւրերը նաւահանգիստին մէջ ընդունելէ ետք։

Ժողովուրդի աննկարագրելի ուրախութիւններուն մէջ, Խրուշչով առաջնորդուեցաւ շոգեկառքի կայարանը, միշտ մեր Նախագահին և Նախարարներուն հետ և Գահիրէ հասաւ կէսօրէ ետք ժամը 1ին։ Քաղաքին մէջ պտոյտ կատարելէ ետք՝ իջեւանեցան Քուպպէի Նախագահական պալատը։ Երեկոյեան մեծ ճաշկերոյթի մը ընթացքին՝ մեր Նախագահը, Խրուշչովը և իր տիկինը պարգեւատրեց շքանշաններով։

Կիրակի՝ այցելութիւններ թանգարաններուն և երեկոյեան՝ առաջին խորհրդակցական ժողովը։ Յետոյ՝ Երիտասարդական աննախընթաց Փառատօնին, ուր խօսեցաւ հոյակապ ճառ մը, պատասխանելով մեր Նախագահի ճառին, Եալթայի Նաւահանգիստին մէջ խռնուած բազմահազար սովետ երիտասարդներուն ողջոյնը հաղորդելով արաբ երիտասարդութեան, յայտնելով անոր թէ անոնք իր կողքին են ազատութեան և ինքնուրոյնութեան համար մղուած պայքարին մէջ։

Երկուշաբթի, կարգ մը այցելութիւններէ ետք՝ ներկայ եղաւ Խորհրդարանի նիստին և խօսեցաւ խիստ կարեւոր ճառ մը։ Իր ճառին մէջ Խրուշչով հաստատեց, որ պատմութիւնը արձանագրած է կայսերապաշտներուն տուած մեր դասը։ Նեղոսի ընթացքին շեղումը՝ պատմութեան ընթացքն ալ կը փոխէ։ Ընկերվարութիւնը աղբիւրն է բարգաւաճման։ Սև անցեալը կտրուած է։ Ս. Միութիւնը ազա-

(Շար. տես էջ 2)



Ն. Խրուշչով Ազգային Ժողովի դահլիճին մէջ

# ՅԻՇԱՏԱԿՆԵՐ ՊԱՏՄԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԵՆԷՆ



Մայիս 9 — «Արմենիա» նաւին դիմաւորումը Եգիպտ. ջուրերուն մէջ



Երկու մեծ առաջնորդները Աղեքսանդրիոյ մէջ սովետ հիւրերուն ժամանման օրը — 9 Մայիս:

## ԲԱՐԻ ԵԿԱՔ

Մեր սիրելի Նախագահը Կամալ Ապտէլ Նասէր, բոլորիս անունով խօսելով Ձեզի, թանկագին Նիքիթա Խրուշչով ու բարի գալուստ մաղթեց Ձեզի:

Բարեկամութեան ջերմ խօսքերուն վրայ ՆՈՐ ԲԱՌ ՄԸ չեմ կրնար աւելցնել թէեւ, թոյլ տուէք որ ե՛ս ալ բաժակս բարձրացնեմ Ձեր կենացը ու Ձեր միջոցաւ կենացը Սովետական Միութեան՝ որուն հարազատ մէկ անդամն է մեր աշխարհը՝ Հայաստան:

Ո՜րքա՜ն հպարտ ենք ու երջանիկ որ դուք եկեր էք մեր մէջ, փարաոններու այս հնագոյն բայց նո՛ր փառքի ու կեանքի հասած երկիրը ու Ձեր աչքով կը տեսնէք այն ամէն գեղեցիկ նուաճումները որ կարելի եղաւ արաբ ու սովետական աշխատաւոր եւ ազնիւ ժողովուրդներուն ճշմարիտ եւ անկեղծ բարեկամութեան շնորհիւ:

Արդար հպարտութեան ու հրճուանքի, խանդավառութեան եւ յուզումի մը աղբիւր է հայրենիքի տարած ամէն նոր յաղթանակ՝ արուեստի, գիտութեան, մարմնամարզի եւ այլ կալուածներու մէջ:

Այս ամէնը, արտասահմանի հայրենասէր հայուն համար — իր այնքան ցաւէն ու արիւն-արցունքէն ետք — կը թուի ըլլալ երա՜զ մը:

Բայց չէ՞ որ հրաշք է պատահեր՝ հայրենիքի մէջ ու մենք տակաւին երա՜զ կը կարծենք...: Կը հաւատա՛նք այդ երազին, ինչպէս կը հաւատանք որ ուրիշ երազներ ալ իրականութիւն պիտի դառնան անպայման, միայն թէ խաղաղութիւն ըլլայ աշխարհի վրայ:

Կեցցէ՛ բոլոր խաղաղասէր ժողովուրդներուն եւ անոնց ախոյեան՝ Սովետական ժողովուրդին, կառավարութեան ու վարչապետ Նիքիթա Խրուշչովին:

Մենք չենք նայիր այլեւս երկինքի աստղերուն՝ կարդալու համար մեր ապագան, չենք հաւատար ո՛չ արեւի, ոչ լուսինի խաւարումին՝ իբր ազդարար նշան որեւէ Աղէտի կամ յայտարար նշան որեւէ բարիքի, չենք հաւատար որ խաղաղութիւնն ու մարդկային երջանկութիւնը աղերս ունին երկնային նման երեւոյթներու հետ:

Մենք կը հաւատա՛նք մարդկային արժէքներու, մարդուն ապրելու բնածին պահանջքին, արդարութեան յաղթանակին, մարդո՛ւն:

Ու կը հաւատանք որ խաղաղութիւնը չի կերտուիր հրաշքով, լուսինով կամ աստղերով, այլ կը կերտուի փոխադարձ հանդուրժողականութեամբ, խաղաղ գոյակցութեամբ, սերտ գործակցութեամբ, սիրո՛վ՝ բայց քար քար, յարկ յարկ, ինչպէս կերտուեցան հրաշալիք բուրգերն անցեալին, ինչպէս աշխատանքով կը կառուցուի բուրգերէն բազմաթիւ անգամ մեծ եւ հոյակապ Ասուանի Բարձր Ջրամբարը:

Ա՛յս է ամրակուռ խաղաղութիւնը, որուն կը հաւատանք մենք:

Ու այս ճիգը կ'ընենք մենք, պիտի ընէ մարդկութիւնը՝ երջանիկ ապագայի համար:

Կեցցէ՛ այդ ապագան կերտող ազնիւ մարդը:

Իրատես ենք. մոռցեր ենք աստղերն ու արեւը: Իրականութիւնը, իրակա՛նը միայն յոյս կուտայ մեզի, հպարտութիւն ու հաճոյք կը պատճառէ հայութեան:

Որքա՜ն ուրախ ու հպարտ զգացինք մենք մեզ՝ երբ լսեցինք թէ «Արմենիա» ջերմանաւը Ձեզ ու Ձեր Շքախումբը կը բերէր այս արեւոտ ու հիւրընկալ երկիրը:

Իսկ յաղթական Ձեր անցքը Նեղուցներէն, մեր ջարդարարներուն իսկ քիթին տակ եւ անոնց պետին Ձեր հեռագիր յղելը՝... նոր ՅԱՂԹԱՆԱԿ մը չէ՞ ասիկա հայութեան որ կը վերապի այսօր, հայութեան՝ որ բնաջի՛նջ ըրին «վերջնականապէս»...:

«Արմենիա» բառը հայը չէր կրնար բերանը առնել: Չկար Արմենիա: Իսկ այսօր, ոչ միայն թուրքը, այլ աշխարհ ամբողջ կը խօսի «Արմենիա»յի մասին...: Պատմական դէպք մը: Հայաստան մը՝ ուր կ'ապրի հայը, ունի հայրենիք եւ արդար պահանջքներ՝ որոնք չեն թաղուած բնաւ քանի որ հայութեան [illegible] չէ եղած երբեք:

Ձեր կենացը ա՛յս բանին համար: Շնորհակա՛լ ենք:

Կեցցէ՛ մեր սիրելի Արաբական Միացեալ Հանրապետութեան, ժողովուրդին ու հայրենասէր եւ ազատասէր Նախագահին՝ Կամալ Ապտէլ Նասէրին:

Կեցցէ՛ Սովետական ժողովուրդին եւ Ձեր կենացը՝ թանկագին Նիքիթա Սերգեեւիչ Խրուշչով:

Բարի՛ եկաք, բարո՛վ երթաք:

17-5-1964 ԱՐՄԷՆ ՏԱՏՈՒՐ



Պետերը կը կոխեն թումբը պայթեցնող կոճակը



Աւազէ առժամեայ թումբին պայթումը՝ Նեղոսի ուղղութիւնը փոխելու համար — 14 Մայիս

«ԿԱՅՍԵՐԱՊԱՇՏՈՒԹԻՒՆԸ ՊԻՏԻ ՓԼՉԻ՝ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ԵՒ ՅԱՌԱՋԴԻՄՈՒԹԵԱՆ ՈՒԺԵՐՈՒ ՅԱՂԹԱՆԱԿԻՆ ԱՌՋԵՒ, ԱՓՐԻԿԷԻ ՄԷՋ:»

ՆԻՔԻԹԱ ԽՐՈՒՇՉՈՎ

ՄԵՐ ՀԻՒՐԸ՝ ԽՐՈՒՇՉՈՎ ՄԷԿՆ Է ՊԵՏԵՐԷՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ ՄԸ ՈՐ ՀԱՐԻՒՐԱՒՈՐ ՄԻԼԻՈՆ ՄԱՐԴԻԿ ԱԶԱՏԱԳՐԱԾ Է»:

ԿԱՄԱԼ ԱՊՏԷԼ ՆԱՍԷՐ



Զուարթ տեսարան մը՝ առաջնորդներու առօրեային

Կ'ողջունեն ժողովուրդը



Գահիրէի պետական սթատի երիտասարդական փառատօնը՝ 10 Մայիսին



# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة "ج.ع.م" - ت ٩١٥٠١٣
صاحبة الامتياز: السيدة عايدة سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) - Tél.915013
Adresse Télégraphique: TCHAHAKIR, Cairo
Rédacteur en chef; SARKIS BALAYAN

Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ
Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱԵԱՆ

Հիմնուած 1948ին

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 29 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 28 ՄԱՅԻՍ 1964 ՀԱՏԸ ԶԵՌՈՒԲ 2,5 Եգ. Դհկ. կամ 25 Լիբ. Դհկ. عدد رقم ٢٩ — الخميس ٢٨ مايو ١٩٦٤


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՍՓԻՒՌՔԱՀԱՅՈՑ ԳՈՐԾԵՐԸ ԵՒ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑԱԿԱՆ ՈԳԻՆ

Բ.

Պէտք է հաստատել, որ 1952էն ետք (Սթալինի մահը) և մանաւանդ 1955էն սկսեալ (Ամենայն Հայոց Կաթողիկոսութեան նմայքին ու օծման առթիւ) կարելի եղաւ ազգային հարցերու և գործերու շուրջ համաձայնութիւն գոյացնել հայրենասէր ճակատի գործօններուն միջև. կ'ըսէինք մեր նախորդ խմբագրականին մէջ: Եւ կը հարցնէինք — ինչպէս:

Հայ սփիւռքին մէջ կային՝

Ա) Խմբակցութիւններ և անհատ գործիչներ, որոնք այլեւս ծանօթ էին, ինչպէս ըսինք, իրենց ուղղութեամբ և գործելակերպով. անոնք կը շարժէին, կ'աշխատէին՝ առաջնորդուած՝

ա) նախ խմբակցական շահէ,

բ) յետոյ անձնական շահէ,

գ) ամենէն ետքը միայն ազգային շահէ:

Այս խմբակցութիւնները և գործիչները, օտարներու հետ իրենց գործակցութեամբն ալ, բոլորովին օրէնքէ դուրս հռչակուեցան:

Բ) Խմբակցութիւններ և անհատ գործիչներ, որոնք ժամանակին և տեղին հետ ուղղութիւն և գործելակերպ կը փոխէին, ունենալով մէկտեղ նպատակի միութիւն, իբրեւ հայրենասիրութիւն. անոնք առաջնորդուած էին՝

ա) նախ անձնական շահէ,

բ) յետոյ խմբակցական շահէ,

գ) ամենէն ետքը միայն ազգային շահէ:

Գ) Խմբակցութիւններ և անհատ գործիչներ, որոնք մի՛ և անփոփոխ խտէալ ունէին, միշտ նոյն ուղղութեամբ, բայց գործելակերպի ելեւէջներով, որոնք պայմաններու և տուեալներու ակարութենէն առաջ կուգային, և ոչ թէ խորքի թերութենէ. ասոնք կը ղեկավարուէին՝

ա) նախ ազգային շահէ,

բ) յետոյ խմբակցական շահէ,

գ) ամենէն ետքը միայն անձնական շահէ:

Դ) Համախմբումներ և անկախ գործողներ, որոնք որոշ նպատակ և ուղղութիւն չունենալով մէկտեղ, պարագայական գոյատումներ եղած են և զբաղած ազգային գործերով: Անոնք ղեկավարուած են՝

ա) նախ անձնական փառքէ,

բ) յետոյ մրցակցական ոգիէ,

գ) ամենէն ետքը միայն ազգային շահէ...

Թէեւ դժուարութեամբ, բայց ի վերջոյ, գէթ վերջին տասնամեակին — քանի Հայաստանի և Հայց. Եկեղեցիի դէմ գործողութիւնները չատցան — վերջին երեք հայրենասէր խումբերը կրցան ապրելու կերպ մը (մոտիւս վիվենտի) գտնել, ի շահ հանրային իրին, պահ մը հրաժարելով խմբակցական յատուկ գործելակերպէ, անհանդուրժողութենէ, դիմացինը արհամարհելու սովորութենէ կամ դիմացինը գրպանը դրած ըլլալու անմիտ յաւակնութենէ:

Հայրենիքին ու Հայց. Եկեղեցիին դէմ նիզակ ճօճող խմբակցութիւնները կը յաւակնէին՝ մի՛շտ հրաման արձակողն իրենք ըլլալ, մի՛շտ ղեկավարն իրենք ըլլալ: Այս յաւակնոտութիւնը պատժուեցաւ և գրեթէ ամէնուրեք՝ անոնք ժողովուրդին կողմէ լքուելով՝ չէզոքացուեցան:

Միւս խմբաւորումներուն միջև որոշ համագործակցութիւն ստեղծուեցաւ, որովհետև կարելի եղաւ ինչպէս ըսինք, «ես աւելի առաջ եմ, ես աւելի կարող եմ»ի ոգին պահ մը յ ա ղ թ ա հ ա ր ե լ և զայն փոխարինել՝ իրարու գաղափարաբանութեան ու սկզբունքային իրականութեան հանդէպ փոխադարձ յարգանքով: Ցանուցն հայրենիքի, ազգի և եկեղեցիի՝ կար փոխադարձ զիջում ու ոչ ոք կը համարձակէր իր մամուլին տակ առած ըլլալ միւսին գլուխը կամ հրահանգներ ուղղել անոր: Կամ այնպէս ցոյց տալ՝ թէ իրական ղեկավարութիւնը (լիտրշիփ) ի'ր ձեռքն է....:

Համագործակցական ոգիի այս պահպանումն ու կիրառումը, արգիւնաւոր էր ազգապահպանման և հայրենադարձութեան խիստ կարեւոր հոգերուն առջև: Կը պայքարէինք այս կամ այն ձեւով, հասնելու համար նաւահանգիստ:

Բնական է, ձեռնածալ նստած չէր յետադիմական փոքրամասնութիւնը և կը ջանար միշտ ու ամենուրեք ճեղք բանալ հայրենասէր ճակատին վրայ: Բայց չյաջողեցաւ:

Օր մը, սակայն,— ըսենք Երուսաղէմի 26-10-63ի ողջագուրումին առթիւ (երկու կաթողիկոսներու միջև) — ոմանք կարծեցին՝ թէ կարելի է հաշտուիլ յետադիմական փոքրամասնութեան հետ: Ոմանք, հայ-

( Շար. 8էս էջ 2 )

## ՄԵԾ ՀԻՒՐԻՆ ՄԵԿՆՈՒՄԸ ԵՒ ՄԻԱՑԵԱԼ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

### 252 ՄԻԼԻՈՆԻ ՆՈՐ ՕԺԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ Ա.Մ.Հ.ԻՆ



Օդակայանին մէջ, մեկնումի պահուն

Ցատուկ շոգեկառքով, Գահիրէէն Աղեքսանդրիա մեկնեցան Վարչապետ Խրուշչով, Նախագահ Նասէր և իրենց ընկերակիցները, Հինգշաբթի, Մայիս 21ին: Շոգեկառքը կանգ առաւ Պէնհա, Թանթա և Տամանհուր՝ ողջունելու համար ժողովուրդը: Աղեքսանդրիոյ քաղաքին մէջ՝ բաց ինքնաշարժով շրջան մը ընելէ ետք՝ հիւրերը իջան Ռաս էլ Թինի պալատը: Երեկոյեան՝ Մամուրայի ամառանոցը տեղի ունեցան կարեւոր մեծ խօսակցութիւններ և խորհրդակցութիւն՝ ԱՄՀի և Ս. Միութեանց յարաբերութեանց, Միջին Արեւելքի կացութեան և միջազգային հարցերու շուրջ: Ապա՝ Մոնթազայի պալատը:

ԱՄՀի «Սուրիա» նաւուն ըսպաները մեծ ընդունելութիւն մը սարքեցին ի պատիւ «Արմենիա» նաւու անձնակազմին:

Մինչ Գահիրէի մէջ՝ ԱՄՀի Ճարտարարուեստի փոխ-վարչապետ Տոքթ. Ազիզ Սըտքի խորհրդակցութիւն մը կ'ունենար Հողային Բարեկարգումի և Ոռոգմանց Սով. Պատուիրակութեան



Առաջնորդներ Ն. Խրուշչով, Կամալ Ապտէլ Նասէր եւ Ա. Ս. Արէֆ հրաժեշտի պահուն: Ետին մէջտեղը՝ ընկ. Ս. Աւաքելեան:

հետ, զոր կը գլխաւորէ Հայաստանի Գիտութիւններու Ակադեմիայի անդամ՝ գիտնական Տոքթ. Դաւթեան:

Վարչապետ Խրուշչով, Տիկին Փեթրովնա-Խրուշչովա և Սովետական Պատուիրակութեան անդամները Գահիրէ վերադարձան: Եւ Երկուշաբթի առտու ժամը 10ին օդի ճամբով մեկնեցան Մոսկուա, 16 օր հիւրուած հիւրը ըլլալով ԱՄՀին: Նախագահ Նասէր և իր ընկերակիցները օդանաւակայան ողջերթի եկած էին:

Իսկ բանակցութիւնները, որոնք Կիրակի երեկոյ վերջացան Քուպպէի պալատին մէջ, եզրափակուեցան և հրատարակուեցաւ Միացեալ Հաղորդագրութիւն, ըստ որուն՝ լուծումի պիտի յանգին ապագաղութացման, զինաթափութեան և խաղաղ գոյակե-

( Շար. տես էջ 2 )

## ԱՄՀ - ԻՐԱՔ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ

Երեքշաբթի 26 Մայիս, կէսօրին, Նախագահ Նասէրի եւ Իրաքի Հանրապետութեան Նախագահ Ապտէլ Սալամ Արէֆի միջեւ ստորագրուեցաւ խիստ կարեւոր համաձայնութիւն մը՝ աւելի մօտիկ միացումի մը համար: «Այս գործակցութիւնը՝ երկու եղբայր երկիրները պիտի տանի դէպի Միացում, համաձայն առ համաձայն» կ'ըսէ միացեալ պաշտօնական հաղորդագրութիւնը:

## ՆԵՀՐՈՒԻ ՄԱՀԸ

Չորեքշաբթի, 27 Մայիս 1964ին՝ աշխարհ սգաց մահը Հնդկաստանի կարողի վարչապետ Նեհրուի, որ համաշխարհային խաղաղութեան ախոյեան մը եւ հայկական դատի բարեկամ մըն էր:

## ԱՐԷՖ ԵՒ ՆԱՍԷՐ







# ՃԱՀԱԿԻՐ

## "ՄԱՐԴԱՍԷՐ" ՀԻՒՊԱՏՈՍԸ

### — ՅՈՒՇԵՐ —

Ատանայի ջարդին (1909) յուշերը կը գրէ «Նայիրի»ի մէջ Տիար Գէորգ Ջաքմաքճեան և հոն կը յիշէ անգլիական հիւպատոսին անունը: Այս «ճէնթըլմէն»ը միևնոյն ատեն Գոնիայի հիւպատոսն էր. վեց ամիս Ատանա կը կենար և վեց ամիս ալ Գոնիա:

Երբ Ատանայի ջարդը սկսած էր, հաւանականութիւն կար որ Գոնիայի հայերն ալ ջարդուէին, սակայն Մէվլէվի կրօնապետին միջնորդութեամբ ատիկա տեղի չունեցաւ:

Այն ատեն այդ միևնոյն հիւպատոսէն՝ Ճենանեան Գոլէճի դասատուները խնդրեցին, որ ի պահանջել հարկին Գոլէճի բնակչութիւնը պատսպարուի Հիւպատոսարանի շէնքին մէջ, որ կից էր Գոլէճին: Ի՞նչ պատասխան տայ կը հաւնիք. «Ձիս հետաքրքրող անձերը Փրոֆ. Ա. Հայկազեանը (Գոլէճի Տնօրէնը) և Ժ ա գ Սայապալեանն են (հիւպատոսարանի քարտուղարն էր), իսկ միացեալ հօյութիւնը եթէ ջարդեն հոգս իսկ չէ:»

Սոյն երկու անձերէն մին՝ գրագէտ Ժագ Սայապալեան 1915ի տարագրութեան միջոցին նահատակուեցաւ, իսկ Փրոֆ. Ա. Հայկազեանը, հակառակ որ իրեն թելադրած են զինադադարէն ետքը հեռանալ Թուրքիայէն և ազատիլ, մտիկ չէ ըրած և անձնազոհութիւն ընելով մնացած է. ապա Քեմալի օրով Խարբերդ տարագրուած և «Թիֆիւս»էն մահացած է:

Զարմանալի է որ հակառակ բազմիցս խարուելնուս, այս տեսակ եւրոպացի «հայասէր»ներու խօսքը մտիկ ըրած ենք. զանոնք հետաքրքրողը միմիայն Թուրքիայէն կորզուած առաւելութիւններն են, մանաւորաբար պաշտօնական անձեր, որոնք իրենց գաղտնի ըսպասարկութեան գործակալները եղած են այսինքն իրենց հետաքրքրուած են իրենց պետութեան շահը միայն:

Անոնք բոլորն ալ, շատ քիչ բացառութիւններով, շահասէր և ընչաքաղց եղած են. ատիկա կը վկայեն մեր այսքան տարուան փորձառութիւնները:

Այս քանի մը տողերը գրեցի որպէս լրացում տրուած տեղեկութիւններուն:

Հ. ԲԱԲԷԼ

◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐

«Ջահակիր»ի Նախորդ թիւով հրատարակուած Գալուստ. վրժ.ի ցուցահանդէսի նկարները տրամադրուած էին Սթուտիօ Ֆիլիփի (Տօքքի) կողմէ:

◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐

## ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ՄԵԿՆՈՂՆԵՐՈՒՆ

Օդափոխութեան մեկնող մեր ընթերցողներէն (բաժանորդ և հատավաճառ) կը խնդրուի վարչութեանս տեղեկացնել իրենց հասցէն, որ թերթ ղրկուի իրենց, առանց յաւելեալ ծախքի:

«ՋԱՀԱԿԻՐ»Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐

«Ջահակիր»ի Աղեքսանդրիոյ Ներկայացուցիչն է Պր. ՎԱՀԱՆ ՊԷՆՏԵԱՆ, Հելիոպոլիս փողոց թիւ 18, Ռամլէ, Քամ Տը Սեզար:

◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐◐









